Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 8 ԱՊՐԻԼ 1952

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝* 2—52—78



## ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՈՆՆ Է

*Մայիսի Մեկը՝ աշխատավորների միջազգային համերաշխության օրն է, բոլոր երկրների բանվորների եղբայրության օրը։ Այդ օրը մայիսմեկյան մարտական դրոշների տակ կկանգնեն միլիոնավոր աշխատավորներ, ցուցադրելով իրենց միասնությունն ու համախմբվածությունը, խաղաղության և դեմոկրատիայի գործը պաշտպանելու իրենց աննկուն կամքը։*

*Մայիսմեկյան գարնանային տոնը հատկապես բերկրալից ու լուսավոր է մեզ համար՝ կոմունիստական հասարակության ազատ ու երջանիկ կառուցողներիս համար։ Խնդությամբ ու հպարտությամբ են լցնում սովետական հայրենասերներիս սրտերը մեր աշխատանքային հաղթանակները։ Բոլշևիկյան պարտիայի փորձված, իմաստուն ղեկավարությամբ, Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի հանճարեղ առաջնորդությամբ, սո-*

վետական ժողովուրդը հաջողությամբ ստեղծում է կոմունիստական հասարակության նյութատեխնիկական բազան։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները մայիսմեկյան տոնը դիմավորում են՝ ոգեշնչված սոցիալիզմի հիմքերի կառուցման գործում ձեռք բերած նշանակալից հաջողություններով։ Այդ երկրների ժողովուրդները լայնորեն օգտագործում են Սովետական Միության սոցիալիստական շինարարության համաշխարհային-պատմական փորձը։ Նոր, ազատ ու երջանիկ կյանք են կառուցում չինական մեծ ժողովուրդը և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի աշխատավորները։

Կապիտալիստական երկրների բանվորական և ճնշված ժողովրդական մասսաները Մայիսի Մեկի օրը է՛լ ավելի սերտորեն կհամախմբեն իրենց շարքերը՝ պայքարելու խաղաղության, դեմոկրատիայի, վավագույն ապագայի համար, ընդդեմ պատերազմի հրձիգների հանցավոր պլանների։ Գաղութային և կախյալ երկրների ժողովուրդները տոնը կնշեն՝ է՛լ ավելի ուժեղացնելով հանուն ազատության ու անկախության համար պայքարը, ընդդեմ օտարերկրյա հարստահարիչների։



Մեր Հայրենիքի սահմաններից դուրս հասարակ մարդիկ Մայիսի Մեկի օրը ամենուրեք կարտահայտեն իրենց ջերմ սերը և երախտագիտության զգացմունքները մեր Հայրենիքի՝ Սովետական Միության նկատմամբ, որը գլխավորում է խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի անպարտելի ճակատը։ Մեր մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի անունը երկրագնդի հարյուր միլիոնավոր մարդկանց սրտերը լցնում է այն անխախտ հավատով, որ խաղաղության ուժերը կհաղթեն պատերազմի հրձիգների սև ուժերին, որ խաղաղությունը կհաղթի պատերազմին։

***

Մայիսի Մեկի տոնը սովետական ժողովրդի համար՝ խաղաղ, ստեղծագործ աշխատանքի տոն է։ Հնգամյակը հաջողությամբ կատարվեց, իսկ կարևորագույն առաջադրանքների գծով զգալիորեն գերակատարվեց հետպատերազմյան ստալինյան հնգամյակը։ 1951 թվականին սովետական մարդիկ նոր հիանալի հաջողություններ ձեռք բերին կոմունիզմի կառուցման բոլոր ասպարեզներում։

Սոցիալիստական արդյունաբերության աշխատողները անցած տարում գերակատարե-

ցին պետական պլանը և 1950 թվականի հա-
մեմատությամբ համախառն արտադրան-
քի աճը հասցրին 16 տոկոսի: Սովետա-
կան Միության արդյունաբերությունը անցյալ
տարի երկու անգամ շատ արտադրանք տը-
վեց, քան նախապատերազմյան՝ 1940 թվա-
կանին: 1950 թվականի համեմատությամբ
անցյալ տարի չուգունի արտադրությունն ա-
վելացավ 14 տոկոսով, պողպատինը՝ 15 տո-
կոսով, պղնձինը՝ 14 տոկոսով, ածխինը՝ 8
տոկոսով, նավթինը՝ 12 տոկոսով, էլեկտրա-
էներգիայինը՝ 14 տոկոսով: Սովետական
Միությունը ներկայումս այնքան պողպատ է
ձուլում, որքան Անգլիան, Ֆրանսիան, Բել-
գիան և Շվեդիան՝ միասին վերցրած: Մեր
երկրում ներկայումս ավելի շատ էլեկտրաէ-
ներգիա է արտադրվում, քան Անգլիայում և
Ֆրանսիայում՝ միասին վերցրած:

Մեր սոցիալիստական արդյունաբերությու-
նըն արագ տեմպերով առաջ է ընթանում
տեխնիկական պրոգրեսի ուղիով: Կոմունիզ-
մի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումն
ապահովվում է ամենակատարելագործված
մեքենաներով: Միայն անցյալ տարվա ըն-
թացքում մեր երկրում ստեղծվեցին մոտ 500
նոր, կարևորագույն տիպի ու մարկայի մեքե-
նաներ ու մեխանիզմներ: Միայն անցյալ



տարվա ընթացքում արտադրության մեջ
արմատավորվել է մոտ 700 հազար գյուտ
և ռացիոնալիզատորական առաջարկություն:
1951 թվականին իրականացված աշքի ընկնող
գյուտերի և արտադրության մեթոդների ար-
մատական կատարելագործումների համար՝
վերջերս Ստալինյան մրցանակների արժանա-
ցան մոտ 1300 մարդ:

Մեր երկրի հպարտությունն են կոմունիզմի
ստալինյան մեծ կառուցումները: Ընկեր
Ստալինի նախաձեռնությամբ սովետական
ժողովուրդն ստեղծում է վիթխարի հիդրոէ-
լեկտրակայաններ, ջրանցքներ և ոռոգիչ սիս-
տեմներ: Այդ կառուցումները՝ մի նոր խոշո-
րագույն քայլ են կոմունիստական հասարա-
կության նյութա-տեխնիկական բազայի ըս-
տեղծման ճանապարհին: Անցած տարում
հաջողությամբ կատարվեցին Վոլգայի, Դոնի
և Դնեպրի վրա կառուցվող խոշորագույն հիդ-
րոտեխնիկական կառուցումների, ինչպես
նաև Գլխավոր Թուրքմենական ջրանցքի շի-
նարարության պլանային առաջադրանքները:

Արդեն այս տարի շարք կմտնի կոմունիզմի
մեծ կառուցումների առաջնեկը՝ Վոլգա—Դոն
նավարկելի ջրանցքը՝ 101 կիլոմետր եր-
կարությամբ: Այդ ջրանցքի գործարկումով
Մոսկվան կդառնա հինգ ծովերի— Սպիտակ,

*Բալթիկ, Կասպից, Ազովի և Սև ծովերի—նավահանգիստ, իսկ երբ շահագործման կըհանձնվի Գլխավոր Թուրքմենական ջրանցքը, Մոսկվա կերթևեկեն նավեր նաև Արալյան ծովից։*

***

*Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման գործում նոր մեծ հաջողություններ են ձեռք բերել կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները, մեքենատրակտորային կայանների և սովխոզների աշխատողները։ 1951 թվականին, չնայած երկրի մի շարք շրջաններում եղած եղանակի անբարենպաստ պայմաններին, ՍՍՌՄ-ում հացահատիկի համախառն բերքը կազմեց 7 միլիարդ 400 միլիոն փութ։ Ներկայումս Սովետական Միությունն ավելի շատ բամբակ է արտադրում, քան իրենց բամբակագործությամբ հայտնի Հընդկաստանը, Պակիստանը և Եգիպտոսը՝ միասին վերցրած։ Անցյալ տարի ՍՍՌՄ-ում անասունների գլխաքանակն ավելացավ համարյա 14 միլիոն գլխով։*

*Գյուղատնտեսության հարաճուն վերելքը ձեռք է բերվել շնորհիվ այն բանի, որ Համ. Կ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն և Սովետական կառավարությունը անդուլ ուշադրություն են դարձնում հողագործության և անասնա-*



*բուծության զարգացմանը։ Սովետական գյուղըն ամեն տարի պետությունից ստանում է հսկայական քանակությամբ նորագույն գյուղատնտեսական մեքենաներ։ Այդ մեքենաները հեշտացնում են աշխատանքը և հնարավորություն են տալիս կոլտնտեսություններում ու սովխոզներում տնտեսությունը վարել գիտական հիմունքներով, լայնորեն օգտագործելով առաջավոր միչուրինյան գիտության նվաճումները։ Անցյալ տարի, օրինակ, գյուղատնտեսությունն ստացավ 137 հազար տրակտոր (15 ուժանոցի փոխադրած), 53 հազար հացահատիկային կոմբայն և 59 հազար բեռնատար ավտոմեքենա։ Բացի դրանից, գյուղ ուղարկվեց երկու միլիոն գյուղատնտեսական այլ մեքենա։ Մեր գյուղատնտեսության մեքենայացման չափազանց բարձր մակարդակի վկայությունն է թեկուզ այն փաստը, որ անցյալ տարի կոլտնտեսությունների դաշտային բոլոր աշխատանքների ավելի քան երկու երրորդականը կատարեցին մեքենա-տրակտորային կայանները։*

*Հաջողությամբ կենսագործվում է բնության վերափոխման ստալինյան մեծ պլանը։ Միայն անցյալ տարի ՍՍՌՄ եվրոպական մասի տափաստանային և անտառատափաստանային*

շրջաններում տնկվել ու ցանվել է 745 հազար հեկտար անտառ։

Մեր Հայրենիքը բարձր է գնահատում սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողների ստեղծագործական անձնվեր աշխատանքը։ Վերջին հինգ տարում Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչում է շնորհվել գյուղատնտեսության մոտ 6 հազար առաջավորների։ Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով պարգևատրվել են կոլտնտեսությունների, սովխոզների և մեքենատրակտորային կայանների մոտ 200 հազար առաջավոր մարդիկ։ Ստալինյան մրցանակի արժանացածների շարքում մեծ թիվ են կազմում սոցիալիստական գյուղատնտեսության առաջավորները։

Գյուղատնտեսության զարգացման 1952 թվականի պլանով գյուղի աշխատավորների առաջ մեծ խնդիրներ են դրված գյուղատնտեսական արտադրանքի հետագա ավելացման գործում։ Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ զգալիորեն բարձրացվի գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվությունը, արագորեն ավելացվի հանրային անասունների գլխաքանակը։

Սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության հզոր ու անշեղ վերելքը



ապահովում է սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրայի անընդհատ աճը։ Մեր երկրի աշխատավորների նյութական դրության բարելավման հիմքը՝ հանրային հարստության աճումն է։ Սովետական Միության տարեցտարի աճող ազգային եկամտի մոտ երեք քառորդը հատկացվում է աշխատավորների նյութական և կուլտուրական անձնական պահանջների բավարարմանը։

Ժողովրդի երջանկության նկատմամբ, նրա բարեկեցության աճման նկատմամբ բոլշևիկների պարտիայի, Սովետական կառավարության, մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինի կողմից հանդես բերվող մեծագույն հոգատարությունն իր վառ արտահայտությունն է գտնում մասսայական սպառման ապրանքների գները սիստեմատիկորեն իջեցնելու մեջ։

Ապրիլի մեկից մեր երկրում կատարվեց պետական մանրածախ գների նոր՝ 1947 թվականից սկսած, թվով հինգերորդ իջեցումը։ Մասսայական սպառման պարենային ապրանքների գներն իջեցվեցին 10-ից մինչև 30 տոկոսով։ Կենսականորեն կարևոր պարենային ապրանքների գների այդքան զգալի իջեցումը է՛լ ավելի կբարելավի սովետական յուրաքանչյուր ընտանիքի բարեկեցու-

թյունը։ Միջին հաշվով 18 տոկոսով իջեցվել են նաև գրքերի, այդ թվում դասագրքերի, գները։ Դա կնպաստի մեր ժողովրդի կուլտուրայի է՛լ ավելի բարձրացմանը։

Գների նոր իջեցման շնորհիվ Սովետական Միության բնակչությունը կստանա 23 միլիարդ ռուբլուց ավելի զուտ շահում։ Դա՝ միայն պետական մանրածախ առևտրի գծով։ Հասկանալի է, որ պետական առևտրի գների իջեցումը նույնպիսի իջեցում առաջ կբերի կոլտնտեսային և կոոպերատիվ առևտրի ասպարեզում, որից բնակչությունը կշահի առնվազն 5 միլիարդ ռուբլի ևս։ Այսպիսով, բնակչության ընդհանուր շահույթը կկազմի 28 միլիարդ ռուբլի։

Գների նոր իջեցումը է՛լ ավելի կամրապնդի սովետական ռուբլին, կբարձրացնի նրա գնողունակությունը, կապահովի սովետական ժողովրդի բարեկեցության է՛լ ավելի բարձրացումը։ Մեր Հայրենիքի աշխատավորները ջերմ շնորհակալություն են հայտնում պարտիային, կառավարությանը, ընկեր Ստալինին՝ ժողովրդի կենսամակարդակի բարձրացման նկատմամբ ցուցաբերած հոգատարության համար, նորանոր պարտավորություններ են ստանձնում, պատրաստակամություն են արտահայտում՝ բոլոր ուժերը



նվիրաբերել Սովետական Միության հզորությունն է՛լ ավելի ամրապնդելու գործին։

Մեր երկրի աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման համար հսկայական նշանակություն ունի այն, որ նրանք պետության հաշվին ստանում են նպաստներ և վճարումներ՝ սոցիալական ապահովագրության գծով մոտ 125 միլիարդ ռուբլի։

Պարտիան և կառավարությունը մեծ ուշադրություն են նվիրում քաղաքում և գյուղում տարվող բնակարանային շինարարությանը։ Անցյալ տարի քաղաքների և բանվորական ավանների բնակիչներն ստացան 27 միլիոն քառակուսի մետր նոր բնակելի տարածություն։ Մոտ 400 հազար նոր բնակելի շենք կառուցվեց գյուղում։

Անցյալ տարին Սովետական երկրում գիտության և կուլտուրայի է՛լ ավելի զարգացման տարի էր։ Բացվել է մոտ 5 հազար նոր յոթնամյա ու միջնակարգ դպրոց, իսկ 5—10-րդ դասարաններում սովորողների թիվն ավելացավ 2 միլիոն 500 հազար մարդով։ Բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորողների թիվն ավելացավ 108 հազար մարդով։ Ավելացավ թատրոնների, ակումբների, ստադիոնների, գրա-

դարանների և կուլտ-լուսավորական այլ հիմնարկների թիվը։

Սովետական Կառավարությունը բարձր գնահատեց անցյալ տարի մեր ինտելիգենցիայի ստեղծած՝ գիտական նոր աշխատությունները և գրականության ու արվեստի նոր երկերը։ Գիտության, գրականության և արվեստի գործիչների մի մեծ ջոկատի շնորհվեցին Ստալինյան մրցանակներ։

Սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում հատուկ կարևոր նշանակություն են ստանում ժողովրդական լայն մասսաների կոմունիստական դաստիարակության հարցերը։ Բոլշևիկյան պարտիան, ընկեր Ստալինը մեզ սովորեցնում են՝ համբերատարությամբ ու համառորեն հաղթահարել կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցության մեջ, պայքարել աշխատանքի և սոցիալիստական սեփականության նկատմամբ ոչ-կոմունիստական վերաբերմունքի դրսևորումների դեմ։

Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մեզ՝ սովետական մարդկանց, դարձրել է մեր բախտի տերը, երկրի անհամար հարստությունների տերը, դարձրել է կոմունիստական հասարակության գիտակից կառուցողներ։ Ազատ, ստեղծագործական



աշխատանքը մեր երկրում դարձել է պատվի գործ, փառքի գործ, արիության ու հերոսության գործ։ Հերոսական բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ մեր ժողովուրդն առաջ է ընթանում դեպի մեծ նպատակը՝ դեպի կոմունիզմի շողշողուն գագաթները։ Խաղաղ, ստեղծագործ աշխատանքում ձեռք բերած իրենց հիանալի հաղթանակներով հպարտ՝ սովետական մարդիկ մայիսմեկյան տոնահանդեսի օրը բարձր կծածանեն կարմիր դրոշները, և մեր հզոր, անծայրածիր երկրով մեկ կհնչի կոչը՝ «Լենինի դրոշով, Ստալինի առաջնորդությամբ՝ առաջ, դեպի կոմունիզմի հաղթանակը»։

***

Սովետական Միության մեծ ընտանիքում մայիսմեկյան տոնը փայլուն նվաճումներով է դիմավորում Սովետական Հայաստանի աշխատավորությունը։

1951 թվականին մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունը նոր առաջընթաց քայլ կատարեց։ 1951 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարվեց 104 տոկոսով, այդ թվում միութենական ենթակայության ձեռնարկությունների պլանը կատարվեց 107 տոկոսով ,և ռեսպուբլիկական ենթակայու-

թյան ձեռնարկությունների՝ 107 տոկոսով։ Ռեսպուբլիկայի 1951 թվականի արդյունաբերության համախառն արտադրանքը համեմատած 1950 թվականի հետ աճեց 18 տոկոսով։

Կենսագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի և ՀԿ(բ)Պ 15-րդ համագումարի որոշումները, կոլտնտեսությունները 1951 թվականին գյուղատնտեսական կուլտուրաների ընդհանուր ցանքատարածությունը նախորդ տարվա համեմատությամբ ավելացրին 7,2 տոկոսով, այդ թվում ցորենի ցանքի տարածությունը ավելացավ 49 հազար հեկտարով։ Զգալի չափով աճեց բերքատվությունը։ Անցյալ տարի հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը աճեց 16 տոկոսով։ Բարձրացավ նաև տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը։

Տարեց-տարի ավելանում է կոլտնտեսությունների դրամական եկամուտը, որի հիման վրա ավելի բարեկեցիկ և ունևոր է դառնում կոլխոզնիկների կյանքը։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների դրամական եկամուտը 1950 թվականի համեմատությամբ ավելացել է 27 միլիոն ռուբլով, իսկ անբաժանելի ֆոնդը՝ 61,3 միլիոն ռուբլով։



Պարտիայի և կառավարության ամենօրյա օգնության շնորհիվ արագ կերպով աճում է գյուղատնտեսության մեքենայացումը։ Տրակտորային պարկի կարողությունը ռեսպուբլիկայում 1951 թվականին ավելացել է 28 տոկոսով։ Ռեսպուբլիկայի ՄՏ կայաններր այժմ սպասարկում են մեր կոլտնտեսությունների ավելի քան 90 տոկոսին։

Ձեռք բերած հաջողությունների համար վերջին տարիների ընթացքում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության 129 առաջավորների շնորհվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչում և 3,418 մարդ պարգևատրվել են Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով։

Խոշոր են հայ ժողովրդի նվաճումները գիտության, կուլտուրայի և գրականության զարգացման ասպարեզներում։ Ռեսպուբլիկայի գիտնականները խոշոր գիտականստեղծագործական աշխատանք են կատարում կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրների հետ կապված գիտական պրոբլեմների լուծման համար։

Սովետական Հայաստանի աշխատավորները ձեռք բերած հաջողությունների համար իրենց երախտագիտության խոսքն են ուղ-

ղում բոլշևիկների մեծ պարտիային, Սովե-
տական Կառավարությանը, ռուս մեծ ժո-
ղովրդին և հայ ժողովրդի ամենամեծ բա-
րեկամ ընկեր Ստալինին։

***

Մայիսի Մեկի օրը ցնծությամբ ու բեր-
կրանքով կդիմավորեն ժողովրդական դե-
մոկրատիայի երկրների աշխատավորները։
Մեծ տոնը նրանք դիմավորում են նշանա-
կալից հաջողություններով՝ քաղաքական,
տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր
բնագավառներում։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների
աշխատավորները կոմունիստական և բան-
վորական պարտիաների ղեկավարությամբ
հաջողությամբ կենսագործում են սոցիալիզ-
մի հիմքերի կառուցման, սոցիալիստական
հասարակության նյութա-տեխնիկական բա-
զայի ստեղծման պլանները։

Հետևելով Սովետական Միության օրինա-
կին, ոգևորվելով նրա նվաճումներով՝ ժողո-
վրդական դեմոկրատիայի երկրները գնա-
լով ավելի ու ավելի մեծ հաջողություններ
են ձեռք բերում սոցիալիստական շինարա-
րության գործում։ Այդ երկրների էկոնոմի-
կան զարգանում է արագ տեմպերով, որ չի



տեսնվել և անհնարին է կապիտալիստական
երկրներում։

Երկրորդ համաշխարհային պատերազմն
ավարտվելուց հետո մի քանի տարի անց՝
ժողովրդական դեմոկրատիայի երկրների
էկոնոմիկան ո՛չ միայն հասավ նախապա-
տերազմյան մակարդակին, այլև շատ ետ
թողեց այդ մակարդակը։ Միայն 1951 թվա-
կանին արդյունաբերական արտադրությունը
Հունգարիայում, Լեհաստանում, Չեխոսլո-
վակիայում, Ռումինիայում, Բուլղարիայում
աճեց 15—30 տոկոսով, իսկ Ալբանիայում՝
ավելի քան 47 տոկոսով։

Հատկապես ապշեցուցիչ են այն հաջողու-
թյունները, որ ձեռք են բերել ժողովրդական
դեմոկրատիայի երկրները սոցիալիստական
ինդուստրացման հիմքը կազմող ծանր ար-
դյունաբերության զարգացման գործում։
Ծանր արդյունաբերության արտադրանքն
այդ երկրներում նախապատերազմյան մա-
կարդակի համեմատությամբ ավելացել է
երկուսից-երեք անգամ և նույնիսկ ավելի։
Հունգարիայում, օրինակ, ծանր արդյունա-
բերությունն անցյալ տարի 210 տոկոսով
շատ արտադրանք տվեց, քան 1938 թվակա-
նին։

Մեծ հաջողություններ են ձեռք բերվել

ժողովրդական դեմոկրատիայի երկրների գյուղատնտեսության ասպարեզում։ Ռումինիայում, օրինակ, անցյալ տարի 20 տոկոսով շատ հացահատիկ և այլ կուլտուրաներ ստացվեց, քան 1950 թվականին։ Բուլղարիայում անցյալ տարի գյուղատնտեսական արտադրանքների ընդհանուր ծավալն ավելացավ 43 տոկոսով։

Սովետական կոլտնտեսությունների օրինակը և իրենց սեփական փորձը ժողովրդական դեմոկրատիայի երկրների գյուղացիներին ավելի ու ավելի են համոզում այն բանում, որ կոոպերացիայի ուղին ունևոր կյանքի միակ ճիշտ ուղին է։ 1951 թվականին ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրներում համայնացված դաշտերի բերքատվությունը միջին հաշվով 15—40 տոկոսով բարձր էր մենատնտեսների ստացած բերքից։

Անշեղորեն բարձրանում է ժողովրդական դեմոկրատիայի երկրների բնակչության նյութական և կուլտուրական կյանքի մակարդակը։ Կապիտալիստական Չեխոսլովակիայում նախապատերազմյան նույնիսկ նպաստավոր տարիներին հարյուր հազարավոր գործազուրկներ կային։ Այժմ Չեխոսլովակիայում չկան գործազուրկներ, չկան քաղ-



ցած, անօթևան մարդիկ։ Երկրում այնպիսի շինարարություն է ծավալվել, ժողովրդական տնտեսությունն այնքան արագ է զարգանում, որ բանվորական ուժը նույնիսկ չի բավականացնում։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում բանվորների, գյուղացիների և նրանց երեխաների համար բացվեցին գիտության դռները։ Ամենուրեք դպրոցական լայն շինարարություն է ծավալվել։ Միայն անցյալ տարի Հունգարական ժողովրդական ռեսպուբլիկայում բացվեց 9 նոր բարձրագույն ուսումնական հաստատություն։ Չեխոսլովակիայում, ժողովրդական իշխանության տարիներին, բացվել է 18 նոր բարձրագույն ուսումնական հաստատություն, իսկ ուսանողների թիվն ավելի քան կրկնապատկվել է։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում ստեղծվում են նոր թատրոններ, ակումբներ, գրադարաններ։ Մեծ ծաղկման են հասել գրականությունն ու արվեստը։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները հսկայական երախտագիտությամբ են նշում այն եղբայրական, անշահախնդիր օգնությունը, որ ցույց է տալիս իրենց Սովետական Միությունը։

Տնտեսության և կուլտուրայի զարգացման

գործում հսկայական հաջողություններ է ձեռք բերել չինական ժողովուրդը։ Չինաստանի արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրությունը հիմնականում արդեն հասել է այն ամենաբարձր մակարդակին, որ երբևէ եղել է երկրի պատմության մեջ։ Չինական արդյունաբերության մի քանի ճյուղեր զգալիորեն գերազանցել են այդ մակարդակը։ Միայն անցյալ տարվա ընթացքում չուգունի ձուլումն աճեց ավելի քան երկու անգամ, իսկ պողպատի արտադրությունը՝ 65 տոկոսով։ Մեքենաշինական գործարաններն այժմ արտադրում են դազգահներ, մետաղահատ մեքենաներ, ավտոմոբիլներ, տրակտորներ և այլն։

Այս տարի Չինաստանում հիմնականում կավարտվի հողային ռեֆորմը։ Դեմոկրատական այդ մեծ վերափոխման շնորհիվ հող են ստացել տասնյակ միլիոնավոր գյուղացիական ընտանիքներ։ Ժողովրդական իշխանության այդ հոգատարությանը գյուղացիությունը պատասխանում է անձնվեր աշխատանքով։ Տարեցտարի բարձրանում է բերքատվությունը։ Հյուսիս-Արևելյան Չինաստանում, օրինակ, գյուղատնտեսական արտադրանքը 1949 թվականի համեմատությամբ ավելացավ մոտ երկու անգամ։



Ամերիկա-անգլիական իմպերիալիստները հույս ունեին տնտեսական բլոկադայով խեղդել Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան։ Չինական ժողովրդի արյունարբու թշնամիների այդ պլանները տապալվեցին։ Հենվելով Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների օգնության վրա, Չինաստանը հաջողությամբ զարգացնում է իր էկոնոմիկան, անշեղորեն ընթանալով վերելքի ուղիով։

Լուրջ հաջողություններ են ձեռք բերել Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի աշխատավորները։ Նրա նվաճումները ակներևաբար ցույց են տալիս, որ խաղաղության ու դեմոկրատիայի ուղին, միասնական, անկախ, խաղաղասեր, դեմոկրատական Գերմանիա ստեղծելու համար մղվող պայքարի ուղին՝ երջանիկ ապագա է ապահովում ամբողջ գերմանական ժողովրդի համար։

***

Կապիտալիստական երկրների աշխատավորները Մայիսի Մեկը դիմավորում են մի այնպիսի իրադրության ժամանակ, երբ կապիտալը ավելի ուժեղ հարձակման է անցել աշխատավորների կենսամակարդակի և դեմոկրատական իրավունքների դեմ։ Ամերի-

կա-անգլիական իմպերիալիստները համաշխարհային նոր պատերազմի անզուսպ պատրաստություն են տեսնում։ Կապիտալիստական մոնոպոլիաները սպառազինությունների կատաղի մրցավազքն օգտագործում են ժողովուրդներին է՛լ ավելի մեծ չափով թալանելու և չտեսնված շահույթներ ստանալու համար։

Ահա ավելի քան 21 ամիս է, որ շարունակվում է ամերիկյան արյունահեղ ինտերվենցիան Կորեայում։ Չնայած ամերիկյան ռազմամոլների պլանների տապալմանը, որոնք մտադիր էին արագ կերպով ընկճել կորեական հերոս ժողովրդի դիմադրությունը, վաշինգտոնյան կառավարողները չեն ցանկանում դադարեցնել պատերազմը։ Ամերիկյան ագրեսորները ամեն կերպ ձգձգում և վիժեցնում են հաշտության բանակցությունները, քանի որ Կորեայում մղվող պատերազմը հսկայական շահույթներ է բերում ԱՄՆ-ի մոնոպոլիաներին։

Ամերիկյան վիճակագիրները, տալով անցյալ տարվա տնտեսական հանրագումարները, հրեշավոր հաշիվներ են արել։ Ահա նրանց հետևությունները. Կորեայում մղվող պատերազմի մեկ և կես տարում սպանվել ու խեղվել է 2 միլիոն 230 հա-



զար մարդ. Ամերիկայի Միացյալ Նահանգները այդ պատերազմի վրա ծախսել են 10 միլիարդ դոլար, բայց դրա փոխարեն ամերիկյան մոնոպոլիաներն ստացել են 90 միլիարդ դոլարի շահույթ։ Հետևաբար, յուրաքանչյուր սպանված և խեղված կորեացու, չինացու, ամերիկացու, անգլիացու, ֆրանսիացու, թուրքի, հոլլանդացու, բելգիացու և ուրիշների հաշվին մոնոպոլիաները վաստակել են 40 հազար դոլար։

Այս է ամերիկյան իմպերիալիստների արյունարբու վիճակագրությունը։ «Ամեն մի դոլարի վրա արյան հետքեր կան...»,—բացառիկ ուժով են հնչում Վլադիմիր Իլյիչ Լենինի այս խոսքերն այսօր, որ նա ասել է ավելի քան երեսուն տարի առաջ։

Կորեայում ամերիկյան ինտերվենտների կատարած նողկալի ոճրագործությունները բողոքի ցասում ու զայրույթ են առաջ բերում աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց մեջ։ Ամերիկյան մարդակերները թունավոր գազեր բացթողին, դրանից հետո գործի դրին պատերազմի ամենասոսկալի, ամենազզվելի միջոցը՝ բակտերիոլոգիական զենքը։ Ամերիկյան ինքնաթիռները Կորեայի և Հյուսիս-Արևելյան Չինաստանի քաղաքների ու գյուղերի վրա ցած են գցում ժանտախտով,

խոլերայով, տիֆով և այլ հիվանդություննե-րով վարակած միջատներ։ Պատերազմի այսպիսի գազանային, միջազգային համաձայնագրերով դատապարտված միջոցների սիրտ չարին դիմել նույնիսկ հիտլերականները։

Ջգտելով ժողովուրդներին նետել համաշխարհային երրորդ պատերազմի անդունդը, ԱՄՆ-ի իմպերիալիստները տենդորեն զանազան ռազմական բլոկներ ու դաշինքներ են կազմում, նորանոր ռազմական բազաներ են ստեղծում՝ Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների վրա հարձակվելու համար։

ԱՄՆ-ի և մարշալլականացված երկրների կառավարողները սպառազինության կատաղի մրցավազքի են դիմել։ Պատերազմի պատրաստվելու ծախսերը կլանում են ԱՄՆ-ի պետական բյուջեի ավելի քան 80 տոկոսը, Անգլիայի ու Իտալիայի բյուջեների կեսը, Ֆրանսիայի բյուջեի 59 տոկոսը։

Պատերազմական ծախսերի ամբողջ ծանր բեռն ընկած է աշխատավոր մասսաների ուսերին։ Ամենուրեք կապիտալիստական երկրներում և, ամենից առաջ, բուն Ամերիկայում, աճում են բնակչությունից գանձվող հարկերը։ Ամերիկյան մամուլը նշում է, որ



ներկայիս պրեզիդենտ Տրումենր ավելի շատ հարկեր է հավաքել, քան իր բոլոր նախորդ պրեզիդենտները՝ միասին վերցրած, 156 տարվա ընթացքում։

Կապիտալիստական երկրներում անընդհատ աճում է աշխատավորների աղքատացումը։ ԱՄՆ-ում պարենային և արդյունաբերական ապրանքների գները, նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, ավելացել են 176 տոկոսով։ Անգլիայում միայն վերջին մեկ տարվա ընթացքում ապրուստի գինը բարձրացել է 25 տոկոսով։ Օրեցօր աճում է գործազուրկների թիվը կապիտալիստական երկրներում։ Ներկայումս գործազուրկների և կիսագործազուրկների թիվը ԱՄՆ-ում հասնում է 16 միլիոնի, Անգլիայում մեկ միլիոնի, Արևմտյան Գերմանիայում՝ ավելի քան 2 միլիոնի, Իտալիայում՝ 4 միլիոնի, Ճապոնիայում՝ 18 միլիոնի և այլն։

Կապիտալիստական երկրների աշխատավոր լայն մասսաները պատերազմ չեն ուզում։ Նրանք հանդես են գալիս ընդդեմ սպառազինությունների մրցավազքի, ընդդեմ Կորեայում ամերիկյան ագրեսիայի։ Նրանք պայքարում են հացի համար, աշխատավարձի բարձրացման համար։

Կապիտալիստական երկրների տասնյակ միլիոնավոր հասարակ մարդիկ իրենց ստորագրություններն են դրել հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ։ Մարտի վերջերին այդ Պակտն արդեն ստորագրել էր 603 միլիոն 570 հազար մարդ։

Աշխատավորների ամենալայն մասսաների գիտակցության մեջ են թափանցել խաղաղության մեծ դրոշակակիր ընկեր Ստալինի խոսքերը, որ «Խաղաղությունը կպահպանվի և կամրապնդվի, եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և դա պաշտպանեն մինչև վերջ»։

Ֆրանսիայում, Իտալիայում, Անգլիայում և արևմտա-եվրոպական մյուս երկրներում շարունակ ավելի ու ավելի է բարձրանում ատելության ալիքը՝ այդ երկրներում, որպես օկուպացիոն տերիտորիայի, գտնվող ամերիկյան զորքերի նկատմամբ։ «Ամերիկացինե՛ր կորեք-գնացեք Ամերիկա»— այս լոզունգը ամենաժողովրդական լոզունգ է դարձել Արևմտյան Եվրոպայում։

Այն ժամանակ, երբ Սովետական Միության կողմից գլխավորվող խաղաղության և դեմոկրատիայի լագերը, որ համախմբված է



միասնական նպատակով, օրեցօր աճում ու ամրապնդվում է, իմպերիալիզմի լագերը, պատերազմի լագերը քայքայվում է ներքին խոր հակասություններից։ Զանազան երկրների կապիտալիստական մոնոպոլիաները պայքար են մղում հումքի ռեսուրսների, վաճառահանության շուկաների համար։ Հակասություններն ընդգրկում են իմպերիալիստական լագերի բոլոր երկրները, սակայն գլխավոր հակասությունները մնում են ԱՄՆ-ի և Անգլիայի միջև եղած հակասությունները՝ ինչպես Եվրոպայում, այնպես էլ Ասիայում։ Կյանքը ցույց է տալիս, որ այդ հակասությունները գնալով ավելի են խորանում։

Իմպերիալիստական լագերի ուժերը ջլատվում են՝ դեմ առնելով գաղութային և կախյալ երկրներում ծավալվող ազգային-ազատագրական շարժումներին։ Գաղութարարների դեմ զենքը ձեռքին հերոսական պայքար է մղում Վյետնամի ժողովուրդը։ Իրենց ազատագրման համար անձնվեր պայքար են մղում Մալայայի, Բիրմայի և Ֆիլիպինների ժողովուրդները։ Շարունակվում է ազգային-ազատագրական պայքարը Ինդոնեզիայում։ Աճում է իմպերիալիզմին ցույց տրվող դիմադրությունը Մերձավոր և Միջին Արևելքի ժողովուրդների մեջ, Հյուսիսային և Հարավային

Աֆրիկայի երկրներում։ Այդ պայքարը մի մասն է երկրագնդի բոլոր հասարակ մարդկանց այն ընդհանուր պայքարի, որ մղվում է իմպերիալիզմի դեմ, հանուն խաղաղության ու դեմոկրատիայի։

Ամերիկյան թերթերի մի խումբ խմբագիրների հարցերին ընկեր Ստալինի տված պատասխանում, որը հրապարակվեց օրերս, նոր ուժով արտահայտված են մեր պետության արտաքին քաղաքականության՝ ժողովուրդների խաղաղության և համագործակցության քաղաքականության հիմնական ըսկըզբունքները։ Այդ պատմական փաստաթղթում ընկեր Ստալինը տվեց այն հարցերի պատասխանը, որոնք հուզում են աշխարհի միլիոնավոր մարդկանց։ Ընկեր Ստալինի պատասխանը ամրապնդում է բարի կամքի բոլոր մարդկանց հավատը այն բանի նկատմամբ, որ հնարավոր է պաշտպանել խաղաղությունը և ժողովուրդների անվտանգությունը։ Խոսելով այն հիմքի մասին, որի վրա հնարավոր է կապիտալիզմի և կոմունիզմի գոյակցությունը, ընկեր Ստալինը մատնանշեց. «Կապիտալիզմի և կոմունիզմի խաղաղ գոյակցությունը միանգամայն հնարավոր է համագործակցելու փոխադարձ ցանկության առկայության դեպքում, իր ստանձնած պար-



տավորությունների կատարման պատրաստակամության դեպքում, հավասարության և ուրիշ պետությունների ներքին գործերին չմիջամտելու սկզբունքի պահպանման դեպքում»։

Սովետական կառավարությունն իր հետևողական խաղաղասիրական քաղաքականության մեջ հենվում է մեր սոցիալիստական պետության հզորության վրա։ Խաղաղության սրբազան գործին է ծառայում սովետական ժողովրդի անձնվեր աշխատանքը, մեր Հայրենիքի հզորությունն ամրապնդող աշխատանքը։ Յուրաքանչյուր սովետական մարդ, յուրաքանչյուր ջերմ հայրենասեր ձգտում է ավելի լավ, ավելի համառորեն աշխատել, որպեսզի է՛լ ավելի ուժեղ լինի Սովետական Միությունը՝ խաղաղության և ժողովուրդների անվտանգության մեծ պատվարը։

Բոլշևիկյան պարտիան, Սովետական կառավարությունը և ընկեր Ստալինը ժողովրդի առաջ դրել են կոմունիստական շինարարության վեհ խնդիրները։ Մենք գիտենք, մենք համոզված ենք, որ այդ խնդիրները հաջողությամբ կլուծվեն, որովհետև մեզ հաղթանակից հաղթանակ է տանում Լենինի-Ստալինի իմաստուն, հերոսական պարտիան, մեր հարազատ և սիրելի ընկեր Ստալինը։

# ԻՆՉՊԵՍ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼ ԹԵՐԹԵՐԻ ՈՒ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԿՈԼԵԿՏԻՎ ԸՆԹԵՐՑԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Աշխատավորական լայն մասսաների շրջանում տարվող քաղաքական ագիտացիայի բազմազան ձևերի մեջ իր ուրույն տեղն ունի թերթերի ու գրականության կոլեկտիվ ընթերցանությունը։

Մեր մի շարք ագիտատորների թվում է, թե քաղաքական-մասսայական աշխատանքում թերթերի և գրականության ընթերցանությունը ամենից հեշտն է, և դրա համար էլ նրանցից շատերը ագիտացիոն պարապմունքի են ներկայանում ընդամենը մի քանի րոպե առաջ, իրենց ձեռքն ընկած թերթով ու գրքով, չմտահոգվելով նույնիսկ նախօրոք որոշելու, թե թերթերից ինչ հոդվածներ, գրքերից ինչ գլուխներ պետք է բարձրաձայն ընթերցեն և ինչ նպատակով, նախօրոք հաշվի չառնելով ունկնդիրների պահանջները, շահագրգռվածությունը։



Ագիտացիոն աշխատանքի փորձից հայտնի է, որ կոլեկտիվ ընթերցանությունը քիչ նախապատրաստություն ու ջանքեր չի պահանջում. դեռ ավելին, բարձրաձայն ընթերցանությանը դիմող ագիտատորը ինքը պետք է կարդա մեր ամենօրյա մամուլը, կապված լինի քաղաքական ու գեղարվեստական գրականության հետ, քանի որ այդպիսով միայն կկարողանա ընդգրկել սովետական մարդկանց հետաքրքրող հարցերի լայն շրջանը։

«Ագիտատորը պետք է զարգացած մարդ լինի,— ասել է Մ. Ի. Կալինինը,— նա պետք է շատ կարդա և իր վրա շատ աշխատի։ Ես կասեի, որ ագիտատորն իր ամբողջ ազատ ժամանակը պետք է տրամադրի ընթերցանությանը»։

Թե որքան խոշոր նշանակություն ունի ընթերցանությունը ագիտատորի գիտելիքները շարունակաբար հարստացնելու համար, երևում է այն հետևողական վերաբերմունքից, որ ընթերցանության նկատմամբ ցուցաբերել են մեր պարտիայի առաջնորդներ Վ. Ի. Լենինը, Ի. Վ. Ստալինը, հանճարեղ գրողներն ու արվեստագետները։

Կրուպսկայան պատմում է, որ Վ. Ի.

Լենինը չափից դուրս ծանրաբեռնված լինելով հանդերձ, յուրաքանչյուր ազատ րոպեն նվիրում էր գրքին, կարդալով ոչ միայն քաղաքական, այլև գեղարվեստական գրականություն։ Ի. Վ. Ստալինը իր վերաբերմունքը դեպի գիրքն ու ընթերցանությունը հիանալի կերպով արտահայտել է զրույցներից մեկում, հայտարարելով. «Որքան էլ ես զբաղված լինեմ, օրական անպայման մի հինգ հարյուր էջ կնայեմ... Սա իմ բաժինն է»։ Պուշկինը պնդել է, որ «ընթերցանությունը լավագույն ուսումն է»։ Գորկին խոստովանվում է, որ «Ես գրքերին եմ պարտական այն ամենի համար, ինչ որ լավ է իմ մեջ»։ Հատկապես գիրքն է, որ «հաղորդել է ինձ գիտության և կուլտուրայի բերկրանքը»։

Հաջորդաբար ընթերցելով մեր ամենօրյա մամուլը և գրականությունը և այդ հիման վրա նախապատրաստվելով պարապմունքի, ագիտատորը աշխույժ և հետաքրքիր զրույցներ անցկացնելու լայն հնարավորություն է ստանում։ Նա հնարավորություն է ստանում զրույցների ժամանակ արտահայտած իր մտքերը հաստատող մեջբերումներ կատարել, օգտագործել գեղարվեստական խոս-



քի ուժը, ունկնդիրների հետաքրքրությունը բորբոքելու, զրույցի բովանդակությունից ստացած տպավորությունը մեծացնելու համար, զրույցի նպատակը պարտիայի և կառավարության որոշումներով, մեր պարտիայի առաջնորդների մտքերով հավատի վերածելու։

Ընթերցանության համար նյութ փնտրելիս, ամենից առաջ պետք է դիմել միութենական, ռեսպուբլիկական և տեղական թերթերին։ Թերթերում են ամենից առաջ տպագրվում պարտիայի ու կառավարության որոշումները, ղեկավար ընկերների ելույթները, Սովետական Միության մեջ կատարվող աշխատանքային իրադարձություններին, միջազգային կյանքին, տեղական հարցերին նվիրված հոդվածներն ու ինֆորմացիաները։

Պատրաստվելով ընթերցանության, ագիտատորը նախ ինքը պետք է կարդա թերթում տպագրված առավել կարևոր հոդվածները և առաջին հերթին առաջնորդողները՝ օրվա հարցերում նախ իրեն և ապա ունկնդիրներին կողմնորոշելու համար։

Օրվա թերթերի բովանդակությանը ծանոթանալուց հետո ագիտատորը կատարում է ընտրություն, թե ինչ հոդվածներ է ընթեր-

ցելու, ինչ հաջողդականությամբ։ Հոդվածների ընտրության ժամանակ ագիտատորը պետք է անպայման նկատի ունենա նաև իր ունկնդիրների աշխատանքի բնագավառը և այդ բնագավառին վերաբերող հոդվածները ընթերցի հաճախ։ Ագիտատորը չի կարող խուսափել ունկնդիրներին հետաքրքրող ընդհանուր բնույթ կրող՝ ասենք սովետական հայրենասիրության, սովետական մարդկանց աշխատանքային սխրագործությունների, աշխատանքային կարգապահության, Սովետական Միության միջազգային դրության վերաբերյալ հարցերից, այդ հարցերը անպայմանորեն կապելով տեղական խնդիրների հետ։

Կոլեկտիվ ընթերցանության համար առաջնակարգ նյութեր են համարվում պարտիայի ու կառավարության որոշումները, պարտիայի ու կառավարության ղեկավար ընկերների ելույթները։ Ագիտատորը նախօրոք ծանոթանալով այդ նյութերի հետ, որոշում է, թե քանի պարապմունքում պետք է ընթերցի նյութը, առանձին գլուխների, պարբերությունների, տվյալների մասին ինչ պարզաբանումներ պետք է տա, նյութի վերաբերյալ ինչպիսի հարցեր պետք է տա ուն-



կընդիրներին, ինչ հարցեր պետք է քննարկման դնի և նրանց ընդհանուր բնույթը կապի ունկնդիրների աշխատանքային խնդիրների հետ։

Թերթերի կոլեկտիվ ընթերցանությունը, թերթերի միջոցով տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի միակ ձևը չէ։ Ագիտացիոն աշխատանքի պրակտիկայում մշակվել են թերթերի միջոցով աշխատելու ուրիշ շատ ձևեր։

Լենինականի Տեքստիլ կոմբինատի ագիտատորների աշխատանքում լայնորեն արմատավորվել է ամենօրյա թերթերը ցուցափեղկերում փակցնելու պրակտիկան, Կոտայքի շրջանի Էլարի ՄՏ կայանի ագիտատորները գրեթե ամեն օր թերթերից կտրում են հետաքրքիր հոդվածներ ու հաղորդագրություններ և այն փակցնում մեխանիզատորների հանրակացարաններում։ Բայազետի շրջանի «Սպարտակ» կոլտնտեսության ագիտատորները գարնանացանի ընթացքում դաշտում աշխատողների համար կազմակերպել են թերթերի ցուցափեղկեր, թերթերում լուսաբանված հրատապ հարցերի բովանդակության հետ կապված իլյիչովկաների հրատարակում և այլն։

Թերթը ագիտատորի լավագույն բարեկամն
ու օգնականն է, քաղաքական-մասսայական
աշխատանքի կարևոր միջոցներից մեկը, ա-
գիտացիոն աշխատանքի բովանդակության
անսպառ աղբյուրը։ Կոլեկտիվ ընթերցանու-
թյան միջոցով պետք է յուրաքանչյուր ուն-
կնդրի կապել սովետական ամբողջ հասա-
րակության հետ, հաղորդակից դարձնել նը-
րան այն ամենի հետ, ինչով զբաղված է մեր
երկիրը։

Բոլշևիկների պարտիայի ու սովետական
ժողովրդի առաջնորդներ Վ. Ի. Լենինը և Ի. Վ.
Ստալինը իրենց գիտական աշխատություն-
ներում, պրոպագանդիստական-ագիտացիոն
ելույթներում լայնորեն օգտագործել են գե-
ղարվեստական գրականությունը, որպես
մարդկանց գիտակցության, կամքի և զգաց-
մունքների վրա ակտիվ ներգործման միջոցի
Այդ միջոցից պետք է օգտվեն նաև մեր ա-
գիտատորները։

Հայրենասիրության վեհ գաղափարները,
որոնք հաջողությամբ լուսաբանված են գե-
ղարվեստական գրականության երկերում, ա-
գիտացիայի համար անփոխարինելի նյութ
են։

Ճիշտ են վարվում մեր ագիտատորներից



շատերը, որ ընդառաջելով ունկնդիրների
ցանկություններին, պարբերաբար կարդում
են ստալինյան մրցանակի արժանացած գե-
ղարվեստական երկերը։ Բ. Պոլևոյի «Պատ-
մություն իսկական մարդու մասին», Պ.
Պավլենկոյի «Երջանկություն», Վ. Պանովա-
յի «Ուղեկիցները», Ս. Բաբաևսկու «Ոսկե
աստղի կավալերը» և «Լույսը երկրի վրա» և
այլ գեղարվեստական գործեր կոլեկտիվ ըն-
թերցանության միջոցով ծանոթ են մեր լայն
հասարակայնությանը։

Սովետական մարդկանց կոմունիստական
դաստիարակության գործում, նրանց քաղա-
քական մտահորիզոնը ընդլայնելու, կուլտու-
րական մակարդակը բարձրացնելու համար
հսկայական նշանակություն ունի գրքի ըն-
թերցանությունը։ Առանց գրքի, առանց նը-
րանից օգտվելու կարողության, առանց
սիստեմատիկորեն գրքին դիմելու — մարդը
կուլտուրական դառնալ չի կարող։

Ագիտատորը գրքերի կոլեկտիվ ընթերցա-
նությամբ սիստեմատիկաբար զբաղվելուց
բացի, գիրքը պետք է տանի մասսաները,
սովորեցնի մարդկանց գրքից օգտվելու եղա-
նակները։

Ագիտացիոն աշխատանքի պրակտիկայում

գրքից օգտվելու բազմազան ձևեր ու մեթոդներ կան։

Ագիտատորները պետք է ունկնդիրների համար ընտրեն գրքեր և հանձնարարեն կարդալու, նրանց կապեն գրադարանների հետ։ Ագիտատորները պետք է ունկնդիրների հետ զրույցներ անցկացնեն նրանց ընտացած տպավորությունների շուրջը, պարզաբանեն անհասկանալի հարցերը։ Խրախուսելի նախաձեռնություն կլինի, եթե ագիտատորները պարապմունքի ժամին, ինչպես նաև ակումբներում, գրադարաններում, հանրակացարաններում կազմակերպեն ընթերցված գրքերի լայն քննարկում։

Կոլեկտիվ ընթերցանությունը ագիտացիոն աշխատանքի կարևոր ձևերից մեկն է։ Մեր ագիտատորները հաճախակի պետք է դիմեն այդ ձևին, թերթերի, գրքերի միջոցով ունկնդիրներին հաղորդակից դարձնեն այն ամենի հետ, ինչ որ տալիս են թերթերն ու գրքերը՝ մեր հերոսական առօրյայի, միջազգային կյանքի վերաբերյալ։



## ՀԱՆՈՒՆ ԲԱՐՁՐ ԵՎ ԿԱՅՈՒՆ ԲԵՐՔԻ

Կարմիր գյուղի «Սպարտակ» կոլտնտեսությունը Նոր-Բայազետի շրջանի այն առաջավոր կոլտնտեսություններից մեկն է, որն ամեն տարի ստանում է բարձր բերք։ Այստեղ կան Սոցիալիստական Աշխատանքի յոթ Հերոսներ, ինչպես նաև շքանշանակիրներ և մեդալակիրներ, որոնք ունեն աշխատանքի հարուստ փորձ։ Նրանք իրենց սեփական փորձը տարեցտարի հարստացնում են սովետական առաջավոր ագրոնոմիական գիտության նվաճումներով և կարողանում են հասնել նորանոր հաջողությունների։

Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ Դրաստամատ Սարգսյանը, Խաչատուր Վարդանյանը, Հակոբ Ջրաղացպանյանը, Խաչատուր Դավթյանը և մյուսները առաջինն էին, որ կոլտնտեսությունում համարձակորեն խիզախեցին հին, ցածր նորմաների դեմ, ելնելով տեղի պայմաններից հողամշակության ասպարեզում մտցրին նոր մեթոդներ և կարո-

ղացան աճեցնել այնպիսի առատ բերք, որ
գյուղն իր պատմության մեջ չէր տեսել։
Սոցիալիստական Աշխատանքի Հերոսնե-
րի փորձը դարձավ բոլոր բրիգադների, ի
վերջո ամբողջ կոլտնտեսության սեփակա-
նությունը։ Այդ փորձի հմուտ գործադրու-
մով կոլտնտեսությունը, որի նախագահն է
Սոցիալիստական Աշխատանքի Հերոս, Հայ-
կական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ
Սարգիս Վարդանյանը, ավելի քան 1000
հեկտար հացահատիկային կուլտուրաների
ցանքատարածության յուրաքանչյուր հեկ-
տարից ստանում է 16—18, իսկ առանձին
հեկտարներից մինչև 25 ցենտներ բերք։
Կոլտնտեսությունը բարձր բերք է ստանում
նաև ծխախոտի, կարտոֆիլի, բանջարեղենի
և բազմամյա խոտաբույսերի ցանքատա-
րածություններից։

«Սպարտակ» կոլտնտեսության հացահա-
տիկային կուլտուրաների ցանքը կատարվում
է բացառապես անջրդի հողերում, չնայած
դրան, ստացվում է բարձր բերք։ Բարձր բեր-
քի ստացման հիմնական պատճառն այն է,
որ կոլտնտեսությունը առաջավորների փորձի
հիման վրա ամեն կերպ պահպանում է հողի
մեջ եղած խոնավությունը, գնալով ընդար-
ձակում է մեքենաների միջոցով կատարվող



աշխատանքների ծավալը, կրճատում է դաշ-
տային աշխատանքների ժամկետները, ապա-
հովում է վարի ու ցանքի բարձր որակը։
Գարնանացանը սեղմ ժամկետում ավարտե-
լու համար կոլտնտեսության վարչությունը
դեռ 15 օր առաջ կազմել է գրաֆիկ, ըստ ո-
րի օրական պետք է կատարվի 40 հեկ-
տար հացահատիկի ցանք, որպեսզի այն
ավարտվի աշխատանքային ութ օրում։ Այդ
բանին հասնելու համար կոլտնտեսությունը
լավ պայմաններ է ստեղծել տրակտորային
բրիգադի աշխատանքի համար։

Գարնանացանի աշխատանքները արագո-
րեն ավարտելու նպատակով կոլտնտեսության
դաշտավարական բրիգադները օգտագործում
են նաև կենդանի քաշող ուժը, որի միջոցով
աշխատացնում են 24 գութան։ Համաձայն
սահմանված պլանի, բրիգադների մաճկալ-
ները օրական պետք է վարեն 12 հեկտար.
մինչդեռ վարում են 14, իսկ առանձին օրե-
րում 15 հեկտար։ Առաջավոր մաճկալներից
Ս. Փափախչյանը, Մ. Ներսիսյանը, Խ. Վար-
դանյանը, Խ. Դավթյանը և մյուսները խո-
պանների վարը կատարում են 25—30 սան-
տիմետր խորությամբ, որով հողի անդաստա-
ներքին շերտը վեր են հանում և դրանով

իսկ պայման ստեղծում հացաբույսերի փարթամ աճման համար։

Կոլտնտեսության դաշտավարական բրիգադները հողի մեջ եղած խոնավությունը պահպանելու նպատակով վարած տարածությունը հաջորդ օրը անպայմանորեն ցանում են։ Ցանքը 100 տոկոսով կատարվում է շարքացաններով և ցանվում է բացառապես տեսակավոր սերմացու, որը շրջանի լեռնային կլիմայական պայմաններում տալիս է բարձր բերք։ Հացաբույսերը մրիկից զերծ պահելու նպատակով ցանվող սերմացուն ցանքից առաջ անպայմանորեն ախտահանվում է։

Առաջներում կոլտնտեսության դաշտում վարը կատարվում էր մեկ ուղղությամբ։ Մեկ ուղղությամբ էր կատարվում նաև ցանքը և ամեն մի հեկտարի վրա ցանվում էր 180 կիլոգրամ ցորեն։ Նման վարի ու ցանքի դեպքում ամեն մի հեկտարից ստացվում էր 10—12 ցենտներ բերք։ Բայց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ Խ. Վարդանյանը, Խ. Դավթյանը, Դ. Սարգսյանը և մյուս առաջավոր կոլտնտեսականները հետագայում պրակտիկայի մեջ մտցրեցին հակառակ ուղղությամբ վարի և խաչաձև ցանքի կատարումը։ Դրա հետ միասին նրանք յուրաքանչյուր հեկտարի վրա ցանեցին 190—200 կիլո-



գրամ սերմացու ու դրանով իսկ ստեղծեցին լիարժեք հեկտարներ, որոնց բերքատվությունը բարձրացավ 25—30 տոկոսով։

Կոլտնտեսության ագիտատորներ Գ. Ճհոյանը, Վ. Ենգոյանը և մյուսները նախ ուսումնասիրեցին ևապա բոլոր բրիգադներում մասսայականացրին առաջավորների այդ փորձը։ Ագիտատորները փորձի մասսայականացումով միայն չբավականացան։ Նրանք հետևեցին, որ այդ արժեքավոր փորձը արմատավորվի։ Եվ իրոք, առաջավորների փորձն արմատավորվեց. ներկայումս չկա մի բրիգադ, որը հակառակ ուղղությամբ վար և խաչաձև ցանք չկատարի։

Կոլտնտեսության դաշտավարական № 5 բրիգադում երբ ագիտատոր Վ. Ենգոյանը զրույց էր անցկացնում խաղաղության լագերի ամրապնդման մասին, վարպետորեն ցույց տվեց, թե ինչպես սովետական մարդիկ իրենց ստեղծագործական աշխատանքով ամրապնդում են խաղաղությունը։ Ագիտատորը դաշտում աշխատող կոլտնտեսականների առջև հարց դրեց՝ գարնանացանի արագ ավարտումով ապահովել բարձր բերքի ստացումը, որն ամենալավագույն ներդրումը կլինի խաղաղության ամրապնդման գործում։ Ագիտատորը ծավալված աշխույժ, ընկերա-

*կան վրույցի ժամանակ ձայն տվեց առաջավոր կոլտնտեսականներին, որոնցից անվանի մաճկալ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Դ. Սարգսյանն ասաց.*

*— Մեր լեռնային պայմաններում որքան որ շուտ ավարտենք ցանքը, այնքան էլ շուտ կհավաքենք բերքը, որը չի տուժի ուշ աշնան բնական պատահարներից։ Դրա համար լավ կլինի, որ մենք վարը սկսենք լուսաբացին և ավարտենք մայրամուտին։*

*Անվանի կոլտնտեսականի առաջարկությունը սիրով ընդունվեց բրիգադի անդամների կողմից։ Բրիգադի անդամները մտան նախամայիսյան սոցիալիստական մրցության մեջ և մրցման հրավիրեցին № 3 բրիգադին՝ հացահատիկային կուլտուրաների ցանքը հինգ աշխատանքային օրում ավարտելու համար։*

*Մրցության մեջ մտնելուց հետո բրիգադում աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 20—25 տոկոսով։ Ագիտատորը այդ առթիվ լույս ընծայեց բլիցթռուցիկ կոլտնտեսության համար խրախուսելով բոլորին։*

*Ագիտատորների նախաձեռնությամբ ծավալված գործարար սոցիալիստական մրցության շնորհիվ կոլտնտեսությունը հինգ օրում կատարեց 240 հեկտար ցանք, որը 40 հեկ-*



*տարով ավելի է, քան նախատեսված էր գրաֆիկով։*

*Կոլտնտեսության հացահատիկային ցանքատարածության հիմնական մասը աշնանացան ցորենն է, որը կազմում է 770 հեկտար։ Զգալով աշնանացանի գարնանային մշակության անչափ կարևորությունը, ագիտատորները դաշտավարական բրիգադներում պատմեցին այն մասին, թե ինչպես Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների փորձի հիման վրա առաջավոր բրիգադները հանքային և տեղական պարարտանյութերով աշնանացան ցանքատարածություններին սնուցում են տալիս ու ցանքատարածությունը փոցխում, որով յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը բարձրանում է 4—5 ցենտներով։ Ագիտատորների անցկացրած զրույցները տվեցին իրենց դրական արդյունքը։ Կոլտնտեսության դաշտավարական բրիգադները վաղ գարնանը աշնանացանին որպես սնուցում տվեցին 192 տոննա հանքային և 2700 տոննա տեղական պարարտանյութ։ Պարարտացումից հետո սկսված է աշնանացանի փոցխումը։ Առաջավորների օրինակով փոցխումը կատարվում է այնպես, որ ջարդվի հողի կեղևակալված շերտը, որպեսզի հացաբույսը ստանա առատ օդ, ջուր և ջեր-*

*մուԹյուն, որոնց առկայուԹյան դեպքում հացաբույսերը փարԹամորեն վեր են բարձրանում։*

*Կոլտնտեսության դաշտավարական բրիգադները գարնանացանի աշխատանքները սկսվելուց առաջ մտել են սոցիալիստական մրցության մեջ և պարտավորվել գարնանացանի հաջող կատարումով, 1951 թվականի համեմատությամբ, 1952 թվականին հացահատիկի համախառն բերքն ավելացնել 12—15 տոկոսով, կարտոֆիլինը՝ 20 տոկոսով, ծխախոտինը՝ 18 տոկոսով, բանջարեղենինը՝ 20 տոկոսով և այլն։ Ստանձնած այդ պարտավորությունների կատարումը ագիտատորները միշտ պահում են կոլտնտեսականների ուշադրության կենտրոնում և բոլշևիկյան ագիտացիան խապաս դնում գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ցանքը ամենասեղմ ժամկետում ավարտելու, կայուն և բարձր բերք ապահովելու գործին։*

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

---



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՄԱՅԻՍԻ 1-Ը ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՈՆՆ Է

*1. Մայիսի 1-ը աշխատավորների համերաշխության և բոլոր երկրների բանվորների եղբայրության միջազգային օրն է։*

*2. Սովետական ժողովուրդը Մայիսի 1-ը տոնում է տնտեսական-քաղաքական աննախընթաց հաջողությունների և հզոր վերելքի պայմաններում։*

*3. Սովետական Հայաստանի աշխատավորների հաջողությունները արդյունաբերության, գյուղատնտեսության և ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի բնագավառներում։*

*4. Ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները Մայիսի 1-ը դիմավորում են նոր կյանքի կառուցման գործում ձեռք բերած նորանոր հաջողություններով։*

*5. Սովետական ժողովուրդը և ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը Մայիսի 1-ը տոնում են*

խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի ուժերի համախմբման և հարաճուն աճման պայմաններում։

6. Սովետական Միությունը գլխավորում է ամբողջ աշխարհում երկարատև և կայուն խաղաղության համար մղվող պայքարը։

7. Ընկեր Ստալինը ամբողջ աշխարհում խաղաղության համար ժողովուրդների կողմից մղվող պայքարի դրոշակակիրն է։

8. Սովետական Միության պատմական հաղթանակները ոգեշնչում են ամբողջ աշխարհի աշխատավոր մարդկանց՝ ազատության ու անկախության, խաղաղության ու դեմոկրատիայի համար նրանց մղած պայքարում։

9. Անձնվեր աշխատանքով էլ ավելի ամրապնդենք մեր սոցիալիստական Հայրենիքի հզորությունը։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Նամակ ամերիկյան բանվորներին. *Երկեր, հ. 28։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի նախընտրական ժողովում 1946 թ. փետրվարի 9-ին։ *Առանձին բրոշյուրով։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ պատասխանը ամերիկյան թերթերի մի խումբ խմբագիրների հարցերին։ *«Ագիտատորի բլոկնոտ» № 7։*

Լ. Պ. ԲԵՐԻԱՅԻ զեկուցումը Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում 1951 թվականի նոյեմբերի 6-ին, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 34-րդ տարեդարձի առթիվ։ *«Ագիտատորի բլոկնոտ» № 21, 1951 թ.։*



ՍՍՌՄ 1952 թվականի Պետական բյուջեի մասին և ՍՍՌՄ 1951 թվականի Պետական բյուջեի կատարման մասին ՍՍՌՄ ֆինանսների մինիստր Ա. Գ. Զվերևի զեկուցումը։ *«Ս. Հ.» 1952 թ. մարտի 7-ի համարում։*

Մայիսի 1-ը աշխատավորների միջազգային տոնն է։ *«Ագիտատորի բլոկնոտ» 1952 թ. № 8։*

Պատ. խմբագրի տեղակալ՝ Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

